Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1956

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԳ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 36 ՏԱՐԻՆ

Հայ ժողովուրդը անհուն բերկրանքով է դիմավորում Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 36-ամյակը։

1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի աշխատավոր մասսաները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ մեկընդմիշտ դեն նետեցին անգլո-ամերիկյան իմպերիալիզմի գործակալների՝ հայ ժողովրդի ոխերիմ թշնամիներ դաշնակների արյունոտ տիրապետությունը և հաստատեցին բանվորների ու գյուղացիների իշխանությունը։

Հայաստանում սովետական կարգերի հաղթանակի շնորհիվ հայ ժողովուրդը վերջնականապես ազատագրվեց ամեն կարգի շահագործումից, օտար զավթիչների ճնշումից, ֆիզիկական բնաջնջման սպառնալիքից և տնտեսական լիակատար քայքայումից, ստանալով ազատ ու անկախ հայրենիք, պետականություն, իր տաղանդը և





ստեղծագործական ուժերը զարգացնելու անսահման հնարավորություններ։

Պրոլետարիատի մեծ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը ջերմորեն ողջունեց Սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում։

1920 թվականի դեկտեմբերի 2-ին Հայաստանի Ռազմա-Ռևոլյուցիոն Կոմիտեի նախագահի անունով ուղարկած հեռագրում նա գրել է. «Հանձին Ձեզ ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»։

Բազմաչարչար հայ ժողովուրդը հաստատուն կերպով մտավ իր պատմության նոր, սոցիալիստական կյանքի կառուցման շրջանը։

Իր ազգային տոնի՝ Սովետական իշխանության հաստատման օրը, հայ ժողովուրդը օրինական հպարտության զգացմունքով հետադարձ հայացք է գցում իր պայքարի ու հաղթանակների անցած երեսունվեց տարիների վրա։ Պատմական այդ ամենակարճ ժամանակաշրջանում Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ, ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական համերաշխ ընտանիքում Հայաստանը՝ ցարական Ռուսաստանի



այդ երբեմնի հետամնաց ծայրամասը, այդ «որբի ու ողբի հայրենիքը» սովետական իշխանության տարիներին դարձավ զարգացած սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի երկիր։ Հայաստանում սոցիալիստական շինարարության համար հսկայական նշանակություն ունեցան Վ. Ի. Լենինի պատմական ցուցումները՝ ուղղված «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների Ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին»։ Իր այդ նամակում, 1921 թվականի ապրիլին, Վ. Ի. Լենինը խնդիր էր դնում անմիջապես սկսել էլեկտրիֆիկացման ու ոռոգման խոշոր աշխատանքներ, որոնք մեծապես կնպաստեին գյուղի սոցիալիստական վերակառուցմանը։ Նոր, սոցիալիստական կյանքի կառուցման գործում հայ ժողովուրդը Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրից միշտ զգացել է Կոմունիստական պարտիայի, Սովետական կառավարության, ՍՍՌՄ ժողովուրդների և հատկապես ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությունն ու աջակցությունը։ Հայաստանում Սովետական իշխանության հաղթանակից անմիջապես հետո Սովետական Ռուսաստանը, Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ հայ

ժողովրդին տրամադրում է 1,5 միլիոն ռուբլի ոսկով, զգալի քանակությամբ արդյունաբերական և պարենային ապրանքներ, գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ, սերմացու և այլն։

1922 թվականի հոկտեմբերին ՌՍՖՍՌ-ի Աշխատանքի և Պաշտպանության Խորհուրդը Վ. Ի. Լենինի նախագահությամբ քննարկելով Սովետական Հայաստանին ֆինանսական օգնություն ցույց տալու հարցը, որոշում ընդունեց երկրորդ անգամ նրան հատկացնել 1,5 միլիոն ռուբլի ոսկով։ ՌՍՖՍՌ-ի Լուսավորության Ժողովրդական Կոմիսարիատը Հայաստանի աշխատավորներին ուղարկեց 100 հազար կտոր գիրք։ Իվանովոյի բանվորները նվեր ուղարկեցին տեքստիլ ֆաբրիկայի սարքավորում, որի բազայի վրա հետագայում աճեց Լենինականի տեքստիլ խոշոր կոմբինատը։

Սովետական իշխանությունը ապահովեց հայ ժողովրդի ստեղծագործական ուժերի մինչ այդ չտեսնված բուռն վերելքը էկոնոմիկայի ու կուլտուրայի բոլոր բնագավառներում։ Արդեն 1928 թվականին Սովետական Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1919 թվականի մակարդակը գերազանցեց 16,6 անգամ, իսկ գյու-



ղատնտեսության համախառն արտադրանքը՝ 6,4 անգամ։ Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ Սովետական Հայաստանը դարձավ առաջավոր ինդուստրիալ երկիր։ Ռեսպուբլիկայում ստեղծվել է լեռնա-հանքային, քիմիական, մեքենաշինական, գունավոր մետալուրգիայի, էներգետիկ, շինանյութերի, տեքստիլ, տրիկոտաժի, սննդի և արդյունաբերական շատ ուրիշ ճյուղեր։ Աճեցին արդյունաբերական խոշոր կենտրոններ՝ Երևանը, Լենինականը, Կիրովականը, Ալավերդին, Ղափանը և մյուսները։

Սովետական իշխանության տարիներին կառուցվել և գործարկվել են այնպիսի խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան, էլեկտրամեքենաշինական, էլեկտրալամպերի, Կաբելի, Ավտոդողերի գործարանները, «ԿԱՆԱԶ»-ը, Լենինականի տեքստիլ, Քաջարանի պղնձի-մոլիբդենի և Կիրովականի քիմիական կոմբինատները, Սևանի, Գյումուշի, Քանաքեռի հիդրոէլեկտրակայանները և այլն։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները ներկայումս երկրին տալիս են պղինձ և ալյումին, մետաղահատ դազգահներ և կոմպրեսորներ, հիդրոտուրբիններ, գեներատորներ և տրանսֆորմատորներ, շար-

*ժական էլեկտրակայաններ, էլեկտրաչափիչ գործիքներ և էլեկտրալամպեր, ավտոմոբիլային և տրակտորային պահեստամասեր, ավտոդողեր, կաուստիկ սոդա, կարբիդ, սուպերֆոսֆատ, պղնձարջասպ, ցեմենտ, կիր, շիֆեր, հրակայուն աղյուս, շինաքար, հեծանիվներ, ժամացույցներ, լայն սպառման արդյունաբերական և պարենային ավելի քան 400 տեսակի. ապրանքներ։*

*Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքն ուղարկվում է մեր մեծ Հայրենիքի բոլոր անկյունները։ Իր հերթին մեր ռեսպուբլիկան Միության տարբեր վայրերից ստանում է այն ամենը, ինչ անհրաժեշտ է իրեն։ Հեռավոր, բայց հարազատ ուղիներով դեպի Մոսկվա, Կիև, Մինսկ, Ռիգա, Կոմսոմոլսկ, Վլադիվաստոկ են գնում Սովետական Հայաստանում արտադրված հաստոցները, դեպի Խարկով, Տուլա, Նովոսիբիրսկ՝ կաբելը, դեպի Լենինգրադ, Ստավրոպոլ, Ռոստով՝ ավտոդողերը, դեպի Սվերդլովսկ և Չելյաբինսկ՝ գունավոր մետաղը, դեպի Սարատով, Կրասնոյարսկ և Ստալինգրադ՝ գեներատորները ու հիդրոտուրբինները, դեպի Կազան, Մոլոտով, Գորկի, Կույբիշև, Ուֆա, Ուրալսկ, Չկալով, Իգարկա, Յակուտսկ, Սախալին կղզին՝ տրիկոտաժեղենը, գուլպեղենը, կոշկե-*



*ղենը, պատրաստի հագուստեղենը, ժամացույցները, գինին, կոնյակները, ծխախոտը և այլն։ Սովետական Միությունից դուրս արտահանվող ապրանքների մեջ իր բաժինն ունի նաև մեր ռեսպուբլիկան։*

*1921—1955 թվականների ընթացքում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ներդրվել է ավելի քան 11 միլիարդ ռուբլի, որից արդյունաբերության բնագավառում 3 միլիարդ 354 միլիոն 900 հազար ռուբլի, գյուղատնտեսության գծով 2 միլիարդ 845 միլիոն ռուբլի, էներգետիկայի գծով՝ 1 միլիարդ 258 միլիոն 800 հազար ռուբլի և այլն։*

*Հայաստանի աշխատավորները իրենց անձնվեր աշխատանքով ապահովեցին 5-րդ հնգամյա պլանի ժամկետից շուտ կատարումը, տալով արդյունաբերական արտադրանքի թողարկման նշանակալից աճ։ 1955 թվականին արդյունաբերական արտադրանքի համախառն թողարկումը, 1950 թվականի համեմատությամբ, ավելացավ երկու անգամ, իսկ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ գրեթե 5 անգամ։ Ինչպես ամբողջ Սովետական Միությունում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում առավել արագ տեմպերով զարգացել է ծանր արդյունաբե-*

բությունը, որը հանդիսանում է սոցիալիստական արդյունաբերության զարգացման հիմքերի հիմքը։ Ծանր ինդուստրիայի տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ կազմում է ավելի քան 60 տոկոս։ Մեզ մոտ հատկապես արագ է զարգանում ծանր արդյունաբերության սիրտը կազմող մեքենաշինությունը, մանավանդ էլեկտրամեքենաշինությունը։ Ծանր արդյունաբերության արտադրանքի ծավալը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճել է 2,5 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 8,5 անգամ։ Մեքենաշինական արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը 1940 թվականի համեմատությամբ աճել է մոտ 45 անգամ։ Եթե 1955 թվականին արդյունաբերական արտադրության ծավալը ռեսպուբլիկայում, 1950 թվականի համեմատությամբ, աճել է գրեթե երկու անգամ, ապա այդ նույն ժամանակամիջոցում մեքենաշինության արտադրանքը ավելացել է 3,4 անգամ, ընդ որում 100 կիլովատից բարձր կարողությամբ գեներատորներինը՝ 10,7 անգամ, մետաղահատ հաստոցներինը՝ 3,1 անգամ, կոմպրեսորներինը՝ 4,2 անգամ, կենտրոնախույս



պոմպերինը՝ 5,4 անգամ, մերկ հաղորդալարինը՝ 3,9 անգամ։

Գունավոր մետալուրգիայի համախառն արտադրանքի ծավալը 5-րդ հնգամյակում աճել է 3,3 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 2,3 անգամ։ Հաջողությամբ զարգանում է ռեսպուբլիկայի ծանր ինդուստրիայի առաջավոր ճյուղերից մեկը՝ քիմիական արդյունաբերությունը, որի արտադրանքը 1951—1955 թվականներին աճել է 2,7 անգամ, այդ թվում հանքային պարարտանյութերինը՝ 3,3 անգամ, պղնձարջասպինը՝ 2,5 անգամ, ծծմբաթթվինը՝ 2 անգամ և այլն։

Ծանր արդյունաբերության առավել արագ զարգացման հիման վրա և նրա հետ մեկտեղ անշեղ վերելք է ապրում ռեսպուբլիկայի նաև թեթև ու սննդի արդյունաբերությունը։ 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելի է թողարկված. բրդե գործվածքներ՝ 4,5 անգամ, մետաքսե գործվածքներ՝ 3,3 անգամ, տրիկոտաժե սպիտակեղեն՝ 2,7 անգամ, գուլպեղեն՝ 67 տոկոսով, բամբակե գործվածքներ՝ 65 տոկոսով, կոշկեղեն՝ 45 տոկոսով, ժամացույցներ՝ 6,3 անգամ, ալյումինե ամանեղեն՝ 2,8 անգամ, կահույք՝ 2,4 անգամ։ Հնգամյակի ընթացքում

սննդարդյունաբերության արտադրանքի արտադրությունը աճել է. շաքարավազինը՝ 94 տոկոսով, մսինը՝ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկություններում՝ 46 տոկոսով, ձեթինը՝ 82 տոկոսով, պահածոներինը՝ 83 տոկոսով։

Անշեղորեն կենսագործելով Վ. Ի. Լենինի պատգամները, Սովետական Հայաստանի աշխատավորները աննախընթաց հաջողությունների են հասել էլեկտրիֆիկացման բնագավառում։ 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 10 էլեկտրակայան՝ 3,1 հազար կիլովատ կարողությամբ, որոնք տալիս էին տարեկան 5,1 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Դաշնակների անփառունակ իշխանության ժամանակ այդ էլեկտրակայանների կարողությունը իջավ 1,5 հազար կիլովատի, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 1,7 միլիոն կիլովատ-ժամի։ Արդեն 1923 թվականին սկսվեց և 1926 թվականին ավարտվեց Երևանի հիդրոէլեկտրակայանի կառուցումը, որի կարողությունը գերազանցեց նախասովետական Հայաստանի բոլոր հիդրոէլեկտրակայանների կարողությունը։ 1928 թվականին ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիայի արտադրությունն արդեն



5 անգամ գերազանցեց 1913 թվականի մակարդակը։

Էներգետիկ բազայի ստեղծման և դրա հիման վրա ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հետագա զարգացման համար խոշորագույն նշանակություն ունեցավ Սևան—Հրազդան կասկադի էլեկտրակայանների կառուցումը, որի առաջին կայանը՝ Քանաքեռգէսը շահագործման հանձնվեց 1936 թվականին։ Հետագայում՝ 1949 թվականին գործարկվեց Սևանի լճային, իսկ 1953 թվականին Գյումուշի հիդրոէլեկտրակայանները։

1955 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելացել է ավելի քան 5 անգամ։

Ներկայումս Հայաստանում էլեկտրաէներգիայի արտադրությունը 440 անգամ ավելի է, քան 1913 թվականին և 1200 անգամ ավելի, քան 1919 թվականին։ Այդ նշանակում է, որ այժմ Հայաստանում էլեկտրակայանները մեկ օրվա ընթացքում ավելի շատ էլեկտրաէներգիա են արտադրում, քան ամբողջ 1913 թվականին։ Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի քանակով Հայկական ՍՍՌ-ը շատ առաջ է անցել արդյունաբերական տեսակետից զարգացած այնպիսի կա-

պիտալիստական երկրներից, ինչպիսիք են Անգլիան, Ֆրանսիան, Հոլանդիան, Ճապոնիան։ Բացարձակ ծավալով Հայաստանը ավելի քան երկու անգամ շատ էլեկտրաէներգիա է արտադրում, քան Թյուրքիան, թեև վերջինս իր տերիտորիայով 25 անգամ մեծ է Հայաստանից։

Խոշոր աշխատանք է կատարվել նաև տրանսպորտի զարգացման ուղղությամբ։ Հինգերորդ հնգամյակում էլեկտրիֆիկացվեց Սանահին—Լենինական երկաթուղագիծը։ Երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճել է 54 տոկոսով, շոգեքարշի օրական միջին վազքը ավելացել է 15 տոկոսով, բեռնատար գնացքի միջին քաշը՝ 20 տոկոսով, բեռնատար վագոնի շրջապտույտի ժամանակը կրճատվել է 22 տոկոսով։

Ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 5-րդ հնգամյակի ընթացքում աճել է 8 անգամ, ավտոբուսներով փոխադրված ուղևորների քանակը՝ 3,9 անգամ, իսկ տրոլեյբուսներով փոխադրված ուղևորների քանակը՝ 2,6 անգամ։ Տրոլեյբուսային գծերի երկարությունը այդ նույն ժամանակամիջո-



ցում ավելացել է 85 տոկոսով։ Երևանը ավտոմոբիլային ուղեգծերով կապված է ռեսպուբլիկայի բոլոր քաղաքների, շրջանային կենտրոնների, ինչպես նաև Թբիլիսիի, Կիրովաբադի, Կիսլովոդսկի և հարևան ռեսպուբլիկաների այլ քաղաքների հետ։

Արդյունաբերության զարգացման հետ միասին աճում է Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը։ Արդյունաբերության մեջ զբաղվող բանվորների թիվը 1955 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել է ավելի քան 2,5 անգամ։

Արմատապես փոխվել է հայ գյուղի դեմքը։ Կոլտնտեսային կարգի հաղթանակը լավագույն պայմաններ է ստեղծել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի վերելքի համար։

1955 թվականին բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները 1913 թվականի համեմատությամբ, ավելացան ավելի քան 1,5 անգամ, իսկ 1919 թվականի համեմատությամբ՝ 6 անգամ։ Մեքենայական բարձր տեխնիկան լայնորեն մուտք է գործել գյուղատնտեսության մեջ։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 95 տոկոսից ավելին սպասարկվում է մեքենա-տրակտորային կայանների կողմից, որոնց թիվը հասնում է 58-ի։ 1955 թվակա-

նին, 1950 թվականի համեմատությամբ, տրակտորային պարկը (15 ուժանոցի վերածած) ավելացավ 43 տոկոսով, հացահատիկային կոմբայնների քանակը՝ 2,3 անգամ, բեռնատար ավտոմեքենաներինը՝ ավելի քան երկու անգամ։ Մեքենա-տրակտորային կայանները 1955 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում 94 տոկոսով ավելի շատ գյուղատնտեսական աշխատանքներ կատարեցին, քան 1950 թվականին։ Մեքենայացված ցրտահերկը կազմեց 96 տոկոս, ցելը՝ 90 տոկոս, բամբակենու և շաքարի ճակնդեղի ցանքը՝ 100 տոկոս։ Խոշոր աշխատանք է կատարված ռեսպուբլիկայի գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման ուղղությամբ։

Մինչև 1956 թվականի հունվարի 1-ը էլեկտրիֆիկացվեցին բոլոր մեքենա-տրակտորային կայանները, սովխոզների 85 և կոլտնտեսությունների 79 տոկոսը։ Եթե մինչև սովետական կարգերի հաստատումը հայ գյուղը չուներ գյուղատնտեսական մասնագետներ, ապա 1955 թվաեանին ռեսպուբլիկայում աշխատում էին 4.400 գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, անասնաբույժներ, մեխանիկներ և գյուղատնտեսական այլ մասնագետներ։ Ռեսպուբլիկայի յուրաքան-



չյուր 10 կոլտնտեսության ընկնում է գյուղատնտեսության 34 մասնագետ։

Իր ազգային տոնը Սովետական Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունը դիմավորում է սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերած նշանակալից հաջողություններով։ Կենսագործելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմական որոշումները սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքի մասին, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և սովխոզները տարեցտարի երկրին տալիս են ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ, ավելացնում են ցանքատարածությունները և նրանց բերքատվությունը, անասունների գլխաքանակը և մթերատվությունը։ Աճում են կոլտնտեսությունների և կոլտնտեսականների եկամուտները։ 1940 թվականի համեմատությամբ, 1955 թվականին կոլտնտեսությունների դրամական եկամուտները աճել են 3 անգամ, անբաժանելի ֆոնդերը՝ ավելի քան 4 անգամ, արտադրության հիմնական միջոցները՝ 3,8 անգամ։ Պետությանը հանձնած ու վաճառած արտադրանքի դիմաց կոլտնտեսությունները 1955 թվականին 144 միլիոն ռուբլով ավելի շատ դր-

րամ են ստացել, քան 1950 թվականին և 133 միլիոն ռուբլով ավելի, քան 1952 թվականին։ Հինգերորդ հնգամյակի ընթացքում բամբակի համախառն բերքը ավելացել է 47 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 51 տոկոսով, ծխախոտինը՝ 54 տոկոսով, բանջարեղենինը՝ 78 տոկոսով, կարտոֆիլինը՝ 16 տոկոսով, խաղողինը՝ 29 տոկոսով, պտուղներինը՝ 26 տոկոսով։ Զգալիորեն ավելացել է անասնապահական հիմնական մթերքների արտադրությունը։ Կոլտնտեսությունների հանրային տնտեսության մեջ 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, մսի ու ճարպի արտադրությունը ավելացել է 81 տոկոսով, կաթինը՝ 80 տոկոսով, բրդինը՝ 50 տոկոսով, իսկ սովխոզներում մսինը՝ 2,2 անգամ, կաթնամթերքինը՝ համարյա 3 անգամ, ձվինը՝ 11 անգամ, բրդինը՝ 26 տոկոսով։ Մեկ կովի միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում 5-րդ հնգամյակի ընթացքում բարձրացել է 88 տոկոսով և մեկ ոչխարի միջին բրդատվությունը՝ 29 տոկոսով։

Ավելանում է անասունների բոլոր տեսակների գլխաքանակը կոլտնտեսություններում, սովխոզներում, ինչպես նաև կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների



անձնական տնտեսության մեջ։ Ռեսպուբլիկայում խոշոր եղջերավոր անասունների ընդհանուր գլխաքանակը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է 21 տոկոսով, այդ թվում կովերի գլխաքանակը ավելացել է 36 տոկոսով, խոզերինը՝ 62 տոկոսով, ոչխարներինը՝ 47 տոկոսով։ Զգալի չափերով ընդլայնվել է կերի բազան։ 1955 թվականին կերային կուլտուրաների ցանքատարածությունները, 1950 թվականի համեմատությամբ, ընդարձակվել են 28 տոկոսով. այդ թվում՝ միամյա խոտաբույսերինը՝ գրեթե 2 անգամ, բազմամյա խոտաբույսերինը՝ 19 տոկոսով, սիլոսային կուլտուրաներինը՝ 3;2 անգամ, հիմնականում եգիպտացորենի հաշվին։

Սովետական իշխանության տարիներին ծաղկեց հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Սովետական Հայաստանը դարձել է համատարած գրագիտության, առաջավոր գիտության, բարձր արվեստի և գրականության երկիր։ 1914 թվականին Հայաստանում կար ընդամենը 459 դպրոց, որից 446-ը տարրական, 6-ը թերի միջնակարգ և միայն 7-ը միջնակարգ։ Այդ դպրոցներում սովորում էին 34.738 աշակերտ և աշխատում 1.146





ուսուցիչ։ Դաշնակների տխրահռչակ իշխանության տարիներին ժողովրդական կրթությունը ավելի ողբալի վիճակում էր գտնվում։

1919 թվականին կար միայն 166 տարրական դպրոց։ Սովետական հասարակարգը ժողովրդական մասսաների համար բացեց լայն ճանապարհ դեպի գիտելիքները, դեպի կրթությունը։ Այժմ ռեսպուբլիկայում կա 1.184 դպրոց, որտեղ սովորում են 281.000 աշակերտ, ուր աշխատում են մոտ 20.000 ուսուցիչ։ Ներկայումս գործող դպրոցների թիվը գերազանցում է 1914 թվականին Հայաստանի բոլոր դպրոցներում աշխատող ուսուցիչների թիվը։

Նախառևոլյուցիոն Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, ոչ մի գիտահետազոտական ինստիտուտ։ Սովետական կարգերի հաստատումից անմիջապես հետո 1921 թվականին բացվեց Երևանի Պետական համալսարանը, իսկ ապա և Պոլիտեխնիկական, Գյուղատնտեսական, Բժշկական, Անասնաբուժական-անասնաբուծական, Մանկավարժական, Գեղարվեստա-թատերական, Ֆիզիկական կուլտուրայի ինստիտուտները, պետական Կոնսերվատորիան։ Այժմ Սովետական



Հայաստանը ունի 12 ստացիոնար բարձրագույն ուսումնական հաստատություն, մի քանի հեռակա ինստիտուտներ, միութենական բուհերի բաժանմունքներ, որտեղ սովորում են ավելի քան 15 հազար ուսանող։

Բնակչության 10.000 շնչին ընկնող ուսանողների թիվը Սովետական Հայաստանում մոտ 7 անգամ ավելի է, քան Ֆրանսիայում, մոտ 13 անգամ ավելի, քան Անգլիայում և 16 անգամ ավելի, քան Թյուրքիայում։

Ռեսպուբլիկայում գործում են 48 տեխնիկում՝ մոտ 18.000 սովորողներով։ Երկրի բոլոր բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ստացիոնար ուսումնական հաստատությունները միայն 5-րդ հնգամյակի ընթացքում տվել են 22.600 մասնագետներ կամ 47 տոկոսով ավելի, քան 4-րդ հնգամյակում։ Ռեսպուբլիկայում աննախընթաց վերելք է ապրում գիտական միտքը, որի կենտրոնը հանդիսանում է Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան։ Գիտությունների ակադեմիան միավորելով մոտ 30 գիտահետազոտական ինստիտուտ, սեկտոր և լաբորատորիա, բեղմնավոր ստեղծագործական աշխատանք է կատարում սովետական գիտության զարգացման գործում։ Նշանակալից են մեր ռեսպուբլիկայի գիտնական-

ների հաջողությունները աստրոֆիզիկայի, կոսմիկական ճառագայթների, մաթեմատիկայի ուսումնասիրության ասպարեզում։ Գիտության այդ բնագավառներում Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան Միության մեջ գրավում է առաջնակարգ տեղերից մեկը։ Ռեսպուբլիկայում աշխատում են ավելի քան 2.500 գիտական և գիտամանկավարժական կադրեր, որոնց կեսը դոկտորներ և գիտությունների թեկնածուներ են։

Ջանասիրությամբ օգտագործելով այն լավագույնը, որ կա անցյալի մեր կլասիկ արվեստի մեջ, հայ ժողովուրդը ստեղծեց իր նոր, հիանալի արվեստը։ Ներկայումս ռեսպուբլիկայում կա 10 երաժշտական և դրամատիկ թատրոն, այդ թվում Ալ. Սպենդիարյանի անվան Լենինի շքանշանակիր Օպերայի և բալետի պետական թատրոնը, Գ. Սունդուկյանի անվան Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանակիր Հայկական պետական դրամատիկ թատրոնը, Կ. Ստանիսլավսկու անվան Ռուսական պետական դրամատիկ թատրոնը, երաժշտական կոմեդիայի, Պատանի հանդիսատեսի թատրոնները։

Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանակիր Հայֆիլհարմոնիան իր մեջ ընդգր-



կում է երգի և պարի անսամբլ, քառաձայն երգեցիկ խումբ, սիմֆոնիկ նվագախումբ, էստրադային նվագախումբ, գուսանական անսամբլ և ստեղծագործական այլ կոլեկտիվներ, որոնք աչքի են ընկնում իրենց ինքնատիպությամբ, կատարման բարձր արվեստով։ Ստեղծագործական վերելքի ճանապարհի վրա է գտնվում Երևանի կինոստուդիան, որի արտադրած ֆիլմերը համամիութենական ճանաչում են գտնում։

Աչքի ընկնող հաջողությունների է հասել սովետահայ գրականությունը, որը վերջին ժամանակներս ստեղծել է սովետական մարդկանց կյանքը ճշմարտացիորեն արտացոլող մի շարք գործեր։ Լուրջ ստեղծագործական նվաճումների են հասել նաև Սովետական Հայաստանի կոմպոզիտորները, նկարիչները, քանդակագործները, ճարտարապետները։ Վերածնված հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի բուռն ծաղկման վառ ստուգատեսը հանդիսացավ Հայկական արվեստի ու գրականության տասնօրյակը, որը տեղի ունեցավ 1956 թվականի հունիսին մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում։ Տասնօրյակում, որը վերածվեց հայ ժողովրդի կուլտուրայի իսկական տոնի, սովետա-

հայ արվեստը և գրականությունը պատվով բռնեցին մեծ քննությունը։ Գ. Սունդուկյանի անվան Հայկական պետական դրամատիկ թատրոնը պարգևատրվեց Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով։ Արվեստի և գրականության 351 աշխատողներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով։ Սովետահայ արվեստի 5 նշանավոր գործիչների շնորհվեց ՍՍՌՄ ժողովրդական արտիստի պատվավոր կոչում։

Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկան ծածկվել է կուլտուր-լուսավորական հիմնարկների խիտ ցանցով։

1955 թվականին Հայկական ՍՍՌ-ում կար 1.662 մասսայական գրադարան՝ ավելի քան 5 միլիոն կտոր գրքով, շրջանային և քաղաքային 52 կուլտուրայի տուն, 1.136 ակումբ, 367 կինո-սարքավորում, 19 թանգարան և տուն-թանգարան, 82.700 ռադիոկետ, 55 հազար 300 ռադիոընդունիչ։ Գնալով աճում է հրատարակվող գրքերի, ամսագրերի ու թերթերի քանակը։ 1955 թվականին ռեսպուբլիկայում հրատարակված գրքերի տիրաժը կազմեց ավելի քան 7 միլիոն օրինակ և 1950 թվականի համեմատությամբ ավելացավ 50 տոկոսով, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 2,5 անգամ։ Հայերեն



լույս են ընծայված Մարքսի և Էնգելսի հիմնական աշխատությունները, Վ. Ի. Լենինի Երկերի ժողովածուի 4-րդ հրատարակության 35 հատորները։ Սկսված է Մարքսի և Էնգելսի երկերի հայերեն հրատարակությունը 30 հատորով։ Հրատարակվում են 43 ռեսպուբլիկական, քաղաքային ու շրջանային թերթեր և 10 ամսագիր։ Մեր ռեսպուբլիկայում 1954 թվականից սկսած հրատարակվում է աշխարհում առաջին քրդական թերթը։



Անցյալի դիրկն է անցել քաղաքի և գյուղի աշխատավորության աղքատությունը։ Սոցիալիստական էկոնոմիկայի բուռն զարգացման հիման վրա անշեղորեն բարձրանում է ռեսպուբլիկայի աշխատավորների նյութական բարեկեցությունը։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անում են հնարավոր ամեն բան, որպեսզի սովետական բոլոր մարդիկ լավ ապրեն։ Բավական է նշել, որ Հայկական ՍՍՌ-ի 1956 թվականի պետական բյուջեի 61,2 տոկոսը հատկացված է սոցիալ-կուլտուրական ծախսերին։ Առողջապահական, գիտական և կուլտուր-լուսավորական հիմնարկների կառուցման համար հատկացված կապիտալ

ներդրումների ծավալը 1951—1955 թ. թ., 1946—1950 թ. թ. համեմատությամբ, աճել է գրեթե 1,5 անգամ։

Բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը 1940 թվականի համեմատությամբ ավելի քան կրկնապատկվել է, զգալիորեն աճել են և կոլտնտեսականների դրամական ու նատուրալ եկամուտները, բարձրացել է նրանց գնողունակությունը։ Պետական և կոոպերատիվ առևտրի բնագավառում մանրածախ ապրանքաշրջանառությունը 5-րդ հնգամյակի ընթացքում աճել է 81 տոկոսով, իսկ գյուղում առևտուր անող սպառողական կոոպերացիայի ապրանքաշրջանառությունը՝ երկու անգամ։

Օրավուր մեծ թափ և ծավալ է ընդունում բնակարանային շինարարությունը։ Միայն 5-րդ հնգամյակում ռեսպուբլիկայի բնակարանային շինարարության մեջ կատարվող կապիտալ ներդրումների գումարը կազմեց 551 միլիոն ռուբլի, որի շնորհիվ կառուցվեցին ավելի քան 600 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Ռեսպուբլիկայի աշխատավորների նյութական բարեկեցության աճման, ինչպես նաև պետության կողմից երկարամյա վարկեր ու շինանյութեր տրամադրելու շնորհիվ



ծավալվում է նաև անհատական բնակարանային շինարարությունը։

Միայն 1951—1955 թ. թ. քաղաքային բնակչությունը կառուցել է 475 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, իսկ կոլտնտեսականները և գյուղական ինտելիգենցիան՝ 26 հազար բնակելի տուն։ Անճանաչելիորեն փոխվել է Երևանը։ Մինչև սովետական կարգերի հաստատումը Երևանը մի նահանգական հետ ընկած քաղաք էր 23 հազար բնակչությամբ, որտեղ անգամ մի եռահարկ շենք չկար։ Այժմ Երևանը դարձել է մեր մեծ Միության առաջավոր ու գեղեցիկ քաղաքներից մեկը, Սովետական Հայաստանի զարգացող արդյունաբերության, գիտության ու կուլտուրայի կենտրոնը։ Այս տարի Երևանում բնակարանային շինարարության վրա երկու անգամ ավելի շատ միջոցներ են ներդրվել, քան 1955 թվականին։ Հիմնովին վերակառուցվել ու բարեկարգվել են Լենինականը, Կիրովականը, Ալավերդին, Ղափանը։ Նոր գործարանների ու ֆաբրիկաների կառուցման հետ մեկտեղ երևան են գալիս նոր քաղաքներ ու բանվորական ավաններ։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդական առողջապահության գործում։

1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 57 բժիշկ։ Այժմ ռեսպուբլիկայում կա հարյուրավոր բուժհիմնարկություն, որոնցում աշխատում են 3.067 բժիշկ։ Հիվանդանոցների թիվը 1913 թվականի համեմատությամբ ավելացել է 33 անգամ, մահճակալներինը՝ 44 անգամ, իսկ բժիշկների թիվը՝ 57 անգամ։ Բուժհիմնարկների քանակը ռեսպուբլիկայում 1940 թվականի համեմատությամբ կրկնապատկվել է, այդ թվում գյուղական վայրերում՝ եռապատկվել։ Եթե 1913 թվականին Հայաստանի գյուղական վայրերում ոչ մի բժշկական հիմնարկ չկար, ապա ներկայումս ռեսպուբլիկայի գյուղական բնակչությանը սպասարկում է 132 հիվանդանոց։ Մինչև ռևոլյուցիան Հայաստանում չկային սանատորիաներ ու հանգստյան տներ։ Այժմ ռեսպուբլիկայում գործում են 21 սանատորիա և 8 հանգստյան տուն, որտեղ ամեն տարի բուժվում ու հանգստանում են հազարավոր աշխատավորներ։

Սովետական իշխանությունը ջերմ հոգատարություն է ցուցաբերում մոր և մանկան նկատմամբ։ Բազմազավակ մայրերն ստանում են պետական նպաստներ։ Տարեցտարի աճում է ծննդատների, մանկամսուրների և մանկապարտեզների թիվը։ Ծննդատներում



մահճակալների քանակը 1940 թվականի համեմատությամբ ավելացել է երկու անգամ։ Ժողովրդի բարեկեցության բարձրացման և բժշկական լայն սպասարկման շնորհիվ ավելանում է ծնդաբերությունը և կյանքի տևողությունը։



Սովետական Հայաստանի զարգացման համար էլ ավելի հոյակապ հեռանկարներ են բացվում վեցերորդ հնգամյակում։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ Կոմունիստական պարտիայի XX համագումարի ընդունած դիրեկտիվներն ապահովում են Սովետական Միության մեծ ընտանիքում միավորված բոլոր ռեսպուբլիկաների, այդ թվում Հայկական ՍՍՌ-ի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա բուռն վերելքը։

Հնգամյակի ընթացքում ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը ռեսպուբլիկայում կավելանա մոտավորապես 1,7 անգամ, ընդ որում, մեքենաշինության, գործիքաշինության և էլեկտրատեխնիկական արդյունաբերության համախառն արտադրանքը կաճի մոտ 4 անգամ, գունավոր մետալուրգիայինը՝ ավելի քան 3 ան-

գամ, քիմիական արդյունաբերությանը՝ 2,2 անգամ, շինանյութերինը՝ 1,7 անգամ, այդ թվում ցեմենտինը՝ երկու անգամ, սպառման առարկաների արտադրությունը՝ 1,4 անգամ։

Վեցերորդ հնգամյակում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման նախագծումները իրականացնելու համար նախատեսվում են մեծ կապիտալ ներդրումներ, որոնք 5-րդ հնգամյակի ներդրումների ծավալը գերազանցում են մոտ 75 տոկոսով։

Վեցերորդ հնգամյակում նախատեսվում է փոխել ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման ուղղությունը, այսինքն գլխավորապես զարգացնել ոչ էներգատար արդյունաբերությունը, որը և կապահովի էներգետիկ ռեսուրսների ավելի խնայողաբար ծախսումը և ռեսպուբլիկայի էկոնոմիկայի նոր, ավելի արագ ու բազմակողմանի զարգացումը։

Պարտիայի XX համագումարն ամբողջ արդյունաբերության տեխնիկական պրոգրեսի ապահովման կարևոր պայմաններից մեկը համարեց ժամանակակից գործիքների և ավտոմատացման միջոցների մասսայական արտադրության կազմակերպումը։ Վեցերորդ հնգամյակում մեր ռեսպուբլիկան կդառնա



գործիքաշինության և ավտոմատացման միջոցների արտադրության կենտրոններից մեկը։

Այս տարի Երևանում կազմակերպվելու է մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտ՝ իր փորձնական-էքսպերիմենտալ բազայով, Կիրովականում՝ քիմիական արդյունաբերության ու գունավոր մետալուրգիայի արտադրական պրոցեսների ավտոմատացման գիտահետազոտական ինստիտուտ, ավտոմատիկայի գործարան։

Ռեսպուբլիկայում վեցերորդ հնգամյակում մեծ չափով կզարգանա նաև մեքենաշինությունը։ Լուսավանում (Սևանի շրջան) կկառուցվի միութենական գործիքաշինական գործարան, որը տարեկան կարտադրի 100 միլիոն ռուբլու գործիքներ, 15 հազար տոննա ձուլվածք և 4 հազար տոննա կռանվածք։ Այդ գործարանում կաշխատեն 3 հազար բանվորներ, ինժեներներ և տեխնիկներ։ Նախատեսված է վերակառուցել և ընդլայնել Հայէլեկտրո, էլեկտրական ճշգրիտ գործիքների, հաստոցաշինական, ավտոմոբիլային պահեստային մասերի գործարանները և մի շարք այլ ձեռնարկություններ ու ցեխեր։

Թուռն կերպով կզարգանա ռեսպուբլիկա-

յի էներգետիկան։ Վեցերորդ հնգամյակում
կավարտվի Սևան—Հրազդան կասկադի բո-
լոր հիդրոէլեկտրակայանների շինարարու-
թյունը, Ծուտով շարք կմտնի. Արզնիի հիդ-
րոէլեկտրակայանը, կառուցվում է Աթար-
բեկյանի հիդրոէլեկտրակայանը, սկսվել է
Երևանի հիդրոէլեկտրակայանի շինարա-
րությունը։ Սևան—Հրազդան կասկադի վեր-
ջին երկու հիդրոէլեկտրակայանների՝ Ար-
գավանի և Նորագավթի կայանների շինա-
րարությունը կսկսվի 1957 թվականին։
Այսպիսով, եթե 18 տարվա ընթացքում
կառուցվել է Սևան—Հրազդան կասկադի 3
հիդրոէլեկտրակայան, ապա 6-րդ հնգամ-
յակում կկառուցվի 5 հիդրոէլեկտրակայան։
Սևան—Հրազդան կասկադի ավարտումով
մոտ երկու անգամ կբարձրանա Սևանի
ջրերի օգտագործման գործակիցը։ Կդրվի
երկրորդ հզոր էներգետիկ բազայի՝ Որո-
տանի կասկադի հիդրոէլեկտրակայանների
ստեղծման հիմքը։ Հայկական ՍՍՌ-ում
կառուցվելու է աշխարհում առաջին արևա-
յին էլեկտրակայանը։ Հնգամյակի ընթաց-
քում էլեկտրաէներգիայի արտադրությունը
ռեսպուբլիկայում կավելանա 1,3 անգամ։
Ծանր արդյունաբերության բոլոր ճյուղե-
րի արագ զարգացման հետ մեկտեղ 6-րդ



հնգամյակում զգալիորեն կզարգանա տեքս-
տիլ, թեթև, սննդի արդյունաբերությունը։
Տեքստիլ արդյունաբերության գծով Կիրո-
վականում կառուցվելու է արհեստական
մետաքսաթելի խոշոր գործարան։
Պարենային ապրանքների արտադրու-
թյան մինիստրության գծով կգործարկվի 17
նոր խոշոր ձեռնարկություն, այդ թվում
Ավանի (Կոտայքի շրջան) աղահանքը, որը
տարեկան 200 հազար տոննա աղ է տալու,
Այրումի պահածոների գործարանը՝ տարե-
կան 15 միլիոն տուփ արտադրանքով,
Երևանի Բիսկվիտի ֆաբրիկան՝ տարեկան
4.000 տոննա արտադրանքով, հացի գոր-
ծարան՝ օրական 60 տոննա արտադրողա-
կանությամբ, Լիկյոր-օղու գործարան և
այլն։
Վեցերորդ հնգամյակում նշանակալի չա-
փերով կզարգանա ռեսպուբլիկայի գյուղա-
տնտեսությունը։ 1960 թվականին, 1955
թվականի համեմատությամբ, հացահատի-
կի արտադրությունն ավելանալու է մոտա-
վորապես 1,5 անգամ, մսինը՝ 2,1 անգամ,
կաթինը՝ 2,2 անգամ, համարյա կկրկնա-
պատկվի բրդի և բոժոժի արտադրությունը։
Մեծ աշխատանքներ են կատարվելու ջրա-
շինարարության բնագավառում։ Որոտան

ցանց է կառուցվելու 39 հազար հեկտար տարածության վրա և ջրովի է դարձվելու 150 հազար հեկտար արոտավայրեր։ Կավարտվի Թալինի, Կոտայքի ջրանցքների և Արզնի—Շամիրամ ոռոգման սիստեմի առաջին հերթի շինարարությունը։

Հոյակապ հեռանկարներով ոգեշնչված, Սովետական Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները և ինտելիգենցիան ամենուրեք արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու գիտական հիմնարկներում անձնվեր աշխատանք են կատարում պարտիայի XX համագումարի պատմական որոշումները կենսագործելու, 6-րդ հնգամյակի առաջին տարվա առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար։ Արդեն առկա են առաջին նվաճումները։ Արդյունաբերության համախառն արտադրանքի 1956 թվականի առաջին կիսամյակի պետական պլանը կատարվել է 103 տոկոսով, իսկ ամբողջ արդյունաբերության արտադրանքի ծավալը, 1955 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, աճել է 7 տոկոսով։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության 1956 թվականի 9 ամսվա համախառն արտա-



դրանքի պլանը կատարված է 103 տոկոսով։

Նոր հաջողություններ է ձեռք բերում կոլտնտեսային գյուղացիությունը։ Հացամթերումների պետական պլանը կատարվեց ժամկետից շուտ 107,6 տոկոսով։ Կոլտնտեսությունները և սովխոզները պետությանը խաղող հանձնելու պլանը կատարել են 142 տոկոսով։ 1956 թվականի 10 ամիսների ընթացքում անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները երկրին ավելի են հանձնել կաթ՝ 71.445 ցենտներ, միս՝ 22.406 ցենտներ, բուրդ՝ 2.261 ցենտներ, բամբակահատիկ՝ 6.716 տոննա և այլն։

ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը լայն հնարավորություններ է ստեղծում առաջավոր փորձի փոխանակման և ստեղծագործական համագործակցության համար, որը արտահայտվում է եղբայրական տարբեր ռեսպուբլիկաների և նրանց քաղաքների, շրջանների, արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների միջև ծավալվող սոցիալիստական մրցության միջոցով։ Գնալով լայն թափ է ստանում սոցիալիստական մրցությունը Հայաստանի և Կիրգիզիայի կոլտնտեսականների,

Կիև և Երևան քաղաքների աշխատավորների, Ուկրաինական ՍՍՌ-ի Խերսոնի մարզի Վիսոկոպոլսկի շրջանի և Արտաշատի շրջանի կոլտնտեսականների, Երևանի և Թբիլիսիի հաստոցաշինական գործարանների կոլեկտիվների միջև և այլն։ Այդ մրցության ընթացքում վառ կերպով դրսևորվում և ավելի է ամրապնդվում սովետական երկրի բազմազգ ժողովուրդների մեծ բարեկամությունը։

Մեծ ու անվիճելի են Սովետական Հայաստանի աշխատավորների նվաճումները։ Բայց Կոմունիստական պարտիան մարդկանց սովորեցնում է չհանգստանալ ձեռք բերածով, քննադատաբար գնահատել կատարվածը և հիմնական ուշադրությունը դարձնել չլուծված խնդիրների վրա։ Ռեսպուբլիկայի բանվորների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի հայրենասիրական գործն է լրիվ օգտագործել այն բոլոր հնարավորությունները և ռեզերվները, որոնք կան մեր արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ։

Սովետական Հայաստանի աշխատավորները կանեն ամեն ինչ պատվով կատարելու հարազատ Կոմունիստական պարտիայի XX համագումարի որոշումները։

---

## ՀԱՂԹԱՆԱԿԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ

Ս. ԻՇԽԱՆՅԱՆ

Քանի տարի առաջ՝ 1936 թվականի դեկտեմբերի 5-ին, Սովետների 8-րդ Արտակարգ համագումարն ընդունեց ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան՝ բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետության Հիմնական օրենքը։ Այդ օրը դարձավ մեր Հայրենիքի պատմության փառապանծ էջերից մեկը և յուրաքանչյուր տարի նշվում է որպես համաժողովրդական տոն։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող փաստաթուղթ է, որի մեջ պարզ ու հակիրճ կերպով խոսվում է սովետական ժողովրդի մեծ նվաճումների, մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի, սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքների հաղթանակի մասին։

Սոցիալիստական դեմոկրատիան՝ դա աշխատավորների իշխանությունն է, դա այնպիսի հասարակական ու պետական կարգ է, որտեղ երկրի ամբողջ կյանքի, նրա նյութա-

կան և հոգևոր բոլոր հարստությունների լիիշխան տերը ժողովուրդն է։

Սովետական պետության հանճարեղ հիմնադիր Վ. Ի. Լենինը նշել է, որ պրոլետարական դեմոկրատիան պրոլետարիատին և աշխատավոր ամբողջ վիթխարի մեծամասնությանը տվեց «...այնպիսի ազատություն ու դեմոկրատիա, որը տեսնված չի. անհնարին է և աներևակայելի որևէ բուրժուական դեմոկրատական ռեսպուբլիկայի մեջ, խլելով, օրինակ, բուրժուազիայից պալատներն ու առանձնատները (առանց դրան ժողովների ազատությունը կեղծավորություն է), խլելով կապիտալիստներից տպարաններն ու թուղթը (առանց դրան մամուլի ազատությունն ազգի աշխատավոր մեծամասնության համար խաբեբայություն է), բուրժուական պառլամենտարիզմը փոխարինելով Սովետների դեմոկրատական կազմակերպությամբ, որոնք 1.000 անգամ ավելի մոտ են «ժողովրդին», ավելի «դեմոկրատական» են, քան բուրժուական ամենադեմոկրատական պառլամենտը»։

Սովետական պետության գոյության մոտ չորս տասնամյա պատմությունն ակնառու կերպով հաստատում է սոցիալիստական դեմոկրատիայի լենինյան բնութագրությունը։ Մի՞թե փաստ չէ, որ միայն այն ժողովուրդը



կարող էր նոր կյանքի կառուցման բնագավառում հրաշքներ գործել, պատմական ամենակարճ ժամանակամիջոցում հետամնաց երկիրը դարձնել առաջավոր ինդուստրիալ տերություն, որի ստեղծագործ ուժերն ազատ են արձակվել բոլոր կապանքներից։

Սովետական նոր Կոնստիտուցիան օրենսդրականորեն ամրապնդեց մեր երկրի հասարակական և պետական կարգի կառուցվածքի հիմքերը, պետական իշխանության և կառավարման օրգանների սիստեմը, ՍՍՌՄ քաղաքացիների իրավունքներն ու պարտականությունները, սովետական ընտրական սիստեմը։ ՍՍՌՄ Կոնստիտուցիան հիմնվում է սոցիալիզմի տնտեսական հիմքի վրա, ամրապնդում և զարգացնում է այն։ Նա ելնում է ՍՍՌՄ-ում կապիտալիստական հասարակարգի վերացման և սոցիալիզմի հաղթանակի փաստից։ Նրա գլխավոր հիմքը սոցիալիզմի այն սկզբունքներն են, որ արտադրության գործիքների և միջոցների նկատմամբ հաստատված է սոցիալիստական սեփականություն, վերացված են մարդու կողմից մարդու շահագործումը, հարստահարումն ու գործազրկությունը, աշխատանքը դարձել է ամեն մի աշխատունակ մարդու պատվի ու փառքի գործը։

Մեր երկրում հաստատված սովետական դեմոկրատիայի բուն էությունը կայանում է նրանում, որ այն ավելի լիակատար կերպով է արտահայտում ժողովրդի արմատական շահերը, սոցիալիստական պետության բոլոր քաղաքացիներին, առանց բացառության, ապահովում է այնպիսի մեծ իրավունքներ, ինչպիսիք են աշխատանքի, հանգստի, կրթության և ծերության ժամանակ նյութական ապահովության իրավունքը։ Սովետական դեմոկրատիան բոլոր քաղաքացիներին ապահովում է իսկական ազատություն և իրավունքներ, անկախ նրանց սեռից, գույքային դրությունից, ազգային ծագումից, նստակեցությունից և կրթական ցենզից։

Ընտրությունների այն սիստեմը, որ գոյություն ունի մեր երկրում, արտահայտում է ժողովրդի իսկական կամքը։ Սովետական ընտրական օրենքը չի պարունակում որևէ վերապահում կամ սահմանափակում։ Կոմունիստների և անկուսակցականների թեկնածուները, որոնց օգտին միահամուռ քվեարկում են ընտրողները, դրանք ժողովրդի զավակներն են, որոնք արտահայտում են նրա շահերն ու իղձերը և որոնք անսահման նվիրված են Հայրենիքին, կոմունիզմի մեծ գործին։



Միանգամայն հակադիր պատկեր են ներկայացնում սովետական և բուրժուական կոնստիտուցիաները։ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի տարբերիչ առանձնահատկությունն այն է, որ նա ոչ միայն արձանագրում է քաղաքացիների իրավունքներն ու ազատությունները, այլև ապահովում է դրանց իրականացումը։ Կապիտալիստական հասարակարգում անձի ազատությունը մի դատարկ ֆրազ է, որ ազդարարում են բուրժուական կոնստիտուցիաները։ Բուրժուական կոնստիտուցիաները միանգամայն բնական են համարում մասնավոր սեփականության տիրապետությունը և մարդու շահագործումը մարդու կողմից։ Այդպիսին է բուրժուական դեմոկրատիան։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ ծնունդ առած սովետական դեմոկրատիան-դեմոկրատիա է աշխատավորների համար, ժողովրդի համար։ Մեր սոցիալիստական հասարակարգը երկրի քաղաքական կյանքի, պետության կառավարմանը հաղորդակից է դարձրել միլիոնավոր մարդկանց։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան խոր ինտերնացիոնալիստական բնույթ ունի։ Մեր երկրի Հիմնական օրենքը օրենսդրականորեն ամ-

բաղնդում է այն պատմական փաստը, որ սովետական բոլոր ազգերն ու ռասաներն իրավահավասար են կյանքի բոլոր բնագավառներում։ Սովետական Կոնստիտուցիայի մեջ իրենց լիակատար և հետևողական արտահայտությունն են գտել լենինյան ազգային քաղաքականության սկզբունքները։ Այդ սկզբունքներին համապատասխան և դրանց հիման վրա մեր երկրի բոլոր ժողովուրդների միջև ստեղծվել է եղբայրական անխախտ բարեկամություն։ Սովետական Միության բոլոր ժողովուրդների միջև եղբայրական բարեկամությունը Կոմունիստական պարտիայի հետևողական լենինյան ազգային քաղաքականության արդասիքն է։ ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունն անհրաժեշտ և կարևոր պայման է դեպի կոմունիզմ կատարվող հաջող առաջընթացի համար։

ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում տնտեսական և կուլտուրական վերելք են ապրում սովետական բոլոր ռեսպուբլիկաները։ Դրա վառ օրինակներից մեկը Սովետական Միության անբաժան մասը կազմող Սովետական Հայաստանն է, որը դարձել է առաջավոր ինդուստրիալ-ագրարային ռեսպուբլիկա։

Հավատարիմ պրոլետարական ինտերնա-



ցիոնալիզմի վեհ սկզբունքներին Սովետական Միությունը միջազգային արենայում պաշտպանում է բոլոր ազգերի ազատությունն ու իրավահավասարությունը։ Վճռականապես դատապարտելով գաղութակալությունը Սովետական կառավարությունը հանդես է գալիս բոլոր ճնշված ազգերի անկախության և սուվերենության պաշտպանության դիրքերում։ Ամբողջ առաջադեմ մարդկությունը հիացմունք է պատճառում Սովետական կառավարության այն քայլը, որ նա վճռականապես դատապարտում է Անգլիայի և Ֆրանսիայի ագրեսիան Եգիպտոսում և գործադրում է իրենից կախված բոլոր միջոցները վերականգնելու խաղաղությունը Մերձավոր Արևելքում։ Սովետական կառավարության այդ վճռականությունը, որը ելնում է եգիպտական ժողովրդի նկատմամբ մեր երկրի աշխատավորների խոր համակրանքից, միահամուռ հավանության արժանացավ ամբողջ սովետական ժողովրդի կողմից։

Աշխարհի բոլոր ազնիվ մարդիկ գնալով համոզվում են բուրժուական դեմոկրատիայի սահմանափակության և կեղծիքի մեջ։

Սովետական դեմոկրատիայի ուժն ու կենսունակությունը նրանումն է, որ նրան ուղղություն է տալիս Կոմունիստական պար-

տիան։ Անշեղորեն ընթանալով Վ. Ի. Լենինի գծած ուղիով, պարտիան մեր ժողովրդին հասցրեց սոցիալիզմի հաղթանակին։ Կենսագործելով Լենինի պատգամները, պարտիան մշտապես ամրապնդում է Սովետական պետությունը, բանվորների և գյուղացիների դաշինքը, ՍՍՌՄ ժողովուրդների մեծ բարեկամությունը։ Սովետական Միության բոլոր ժողովուրդներն անսահմանորեն վստահում են Կոմունիստական պարտիային, որի միակ հոգսը ժողովրդի շահերին ծառայելն է։

Կոմունիստական պարտիան անդուլ կերպով ամրապնդում և լայնացնում է իր կապերը ժողովրդական ամենալայն մասսաների հետ։ Նա խորապես հավատում է ժողովրդի ռևոլյուցիոն եռանդին և ստեղծագործական ուժերին ու ամեն կերպ զարգացնում է աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը։ Պարտիան համարձակ ու վճռականորեն բացահայտեց անհատի պաշտամունքի վնասակար հետևանքները։ Պարտիան ձեռնարկել է բոլոր միջոցները սովետական դեմոկրատիան ամեն կերպ զարգացնելու, այդ գործում եղած բոլոր խեղաթյուրումները վերացնելու համար։ ՍՄԿՊ XX համագումարը խնդիր դրեց ամեն կերպ զարգացնել սովետական դեմոկրատիզմը, համառ կերպով



բարելավել սովետական բոլոր օրգանների աշխատանքը, ամրապնդել նրանց կապերը մասսաների հետ։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան միջազգային հըսկայական նշանակություն ունեցող փաստաթուղթ է։ Մեր պետության Հիմնական օրենքը ակնառու կերպով ամբողջ աշխարհին ցույց է տալիս, թե ինչ նվաճումներ կարող է ձեռք բերել այն ժողովուրդը, որը դեն է շպրտել կապիտալիստական ստրկության լուծը և կանգնել է սոցիալիզմի դրոշի տակ։ ՍՍՌՄ Կոնստիտուցիան վկայում է սոցիալիզմի և դեմոկրատիայի անհաղթահարելի ուժի մասին։ Դա մարդկային երջանկության միակ ուղին է։ ՍՍՌՄ Կոնստիտուցիան ոգեշնչում է աշխարհի միլիոնավոր մարդկանց խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար նրանց մղած պայքարում։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՈՎԵՏԱՑՄԱՆ 36 ՏԱՐԻՆ*

### Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչ է Սովետական իշխանությունը: *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների Ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, *Երկեր, հատոր 32, էջ 402—445, Հայպետհրատ, 1952։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, *Հայպետհրատ, 1956։*

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *Հայպետհրատ, 1956, էջ 95։*

Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ— *Հոկտեմբերյան* Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 39-րդ տարեդարձը, *զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, տպագր-*



*ված «Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— ՍՍՌ Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում, *տպագրված «Պարտիական կյանք» ամսագրի 1956 թվականի առաջին համարում։*

## *2. ՍՍՌՄ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ*

### Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Թեզիսներ և զեկուցում բուրժուական դեմոկրատիայի և պրոլետարիատի դիկտատուրայի մասին, *Երկեր, հատոր 28, էջ 594—617, Հայպետհրատ, 1956։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան: *(Հիմնական օրենք)։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական հասարակական և պետական կարգի հետագա ամրապնդումն ու զարգացումը, *ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956, էջ 131—138։*

Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ— *Հոկտեմբերյան* Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 39-րդ տարեդարձը, *զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

## *3. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ԲԱՑԻ ԺՈՂՈՎՐԴԻ ՇԱՀԵՐԻՑ ՈՒՐԻՇ ՇԱՀԵՐ ՉՈՒՆԻ*

### Գրականություն

**Սովետական Միության Կոմունիստական պարտիա-**

յի նիստն տարին (1903—1953), Հայպետհրատ, 1953։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Զեկուցում, ՍՄԿԿ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956, էջ 150—172։

Կոմունիստական պարտիան Հոկտեմբերի հաղթանակի ոգեշնչողն ու կազմակերպիչն է, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 6-ի համարում։

### 4. ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՄԱՐՏԱԿԱՆ ՕԳՆԱԿԱՆՆ Է

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երիտասարդության միությունների խնդիրները (ճառ Ռուսաստանի Կոմունիստական երիտասարդության Միության Համառուսաստանյան 3-րդ համագումարում) 2 հոկտեմբերի 1920 թ., Երկեր, հատոր 31, էջ 343—366, Հայպետհրատ 1952։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ելույթ Մոսկվայի երիտասարդության միտինգում, 1956 թվականի նոյեմբերի 8-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 10-ի համարում։

Կոմունիզմի երիտասարդ կառուցողները, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 11-ի համարում։

### 5. ԾԱՂԿՈՒՄ ԵՎ ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ



### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ

Գրականություն

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ — ՍՍՌ Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում, տպագրված «Պարտիական կյանք» ամսագրի 1956 թվականի առաջին համարում։

Հ. Խ. ՄԱՐԳԱՐՅԱՆ— Սովետահայ արվեստի և գրականության կենսական խնդիրները, տպագրված «Պարտիական կյանք» ամսագրի 1956 թվականի 7-րդ համարում։

Սովետական Հայաստանի 36 տարին, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 22-րդ համարում։

### 6. ԱՄԵՆ ԿԵՐՊ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵՆՔ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ, ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, Երկեր, հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։

Արտադրության ռացիոնալիզատորների, գյուտարարների և նորարարների Համամիութենական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ Սովետական Միության բոլոր բանվորներին և բանվորուհիներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին, գիտության և տեխնիկայի գործիչներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հոկտեմբերի 26-ի համարում։



*7. ՀԱՂԹԱՆԱԿՈՎ ԴՈՒՐՍ ԳԱՆՔ ՀԱՅԱՍՏԱՆ—ԿԻՐԳԻԶԻԱ ԵՎ ԵՐԵՎԱՆ—ԿԻԵՎ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԻՑ*

**Գրականություն**

*(Օգտագործել մրցության ընթացքի վերաբերյալ պարբերական մամուլում հրապարակված նյութերը)։*

*8. ԲԱՐՁՐ ՈՐԱԿՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՏՐԱԿՏՈՐՆԵՐԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄՅՈՒՍ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՈՒ ԳՈՐԾԻՔՆԵՐԻ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒՄԸ*

**Գրականություն**

ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվները ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ. *Հայպետհրատ, 1956, էջ 48—50։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումները մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին, *Հայպետհրատ, 1953, էջ 126—131։*

Գյուղատնտեսական մեքենաների նորոգումը կազմակերպելու մի քանի հարցերի մասին. *«Հայաստանի կոլտնտեսական» № 10, էջ 58—60։*

*9. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՆԽՈՐՏԱԿԵԼԻ Է*

**Գրականություն**

ՍՍՌ Միության կառավարության Դեկլարացիան Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների բարեկամության և համագործակցության զարգացման ու հետագա ամրապնդման հիմունքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 1-ի համարում։*

Կեցցե՛ Սոցիալիստական երկրների մեծ միասնությունը, *«Ժենմինժիբաո» թերթի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 4-ի համարում։*

Սոցիալիստական երկրների բարեկամությունն ու միասնությունն անխորտակելի է, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի նոյեմբերի 4-ի համարում։*



---

## СОДЕРЖАНИЕ:



Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

## ԲԱՑՎԱԾ Է
## «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի
### 1957 թվականի
### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունն ընդունվում է կապի գրասենյակներ և «Սոյուզպեչատ»-ի բոլոր բաժանմունքներում։ Լույս է տեսնում ամսական 2 անգամ, 12 ամիսը—12 ռուբլի, մեկ համարը—50 կոպեկ։*

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

---

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 22** **1956г.**

ՎՖ 06950 Պատվեր 916 Տիրաժ 8300

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.